*Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք*


ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 17


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1944

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 17

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1944

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍՏԱՏՄԱՆ 24-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## (ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՂՆԵՐԻ ՀԱՄԱՐ)

*Հայաստանում սովետական կարգերի հաստատման 24-րդ տարեդարձը հայ ժողովուրդը տոնում է գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ Կարմիր Բանակի տարած հաղթանակների պայմաններում:*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ Ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձին նվիրված իր զեկուցման և հրամանի մեջ ընկեր Ստալինը հստակորեն վերլուծեց մեր ժամանակի պատմական իրադարձությունները: Նա տվեց գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ վերջնական հաղթանակ տանելու մարտական ծրագիրը:*

*Պատերազմի երկու նախորդ տարիները գերմանական զորքերի հարձակման և նրանց դեպի մեր երկրի խորքը առաջխաղացման տարիներ էին, երբ Կարմիր Բանակը*

հարկադրված էր պաշտպանողական մարտեր մղել: Պատերազմի երրորդ տարին արմատական բեկման տարի եղավ մեր ռազմաճակատում: Այդ տարվա ընթացքում Կարմիր Բանակը ծավալեց հարձակողական հուժկու մարտեր, գերմանական զորքերից մաքրեց սովետական հողի երկու երրորդը և նրանց ստիպեց անցնելու պաշտպանության:

Պատերազմի չորրորդ տարվա և նախորդ տարիների միջև արմատական տարբերություն կա: Այդ տարին հանդիսացավ սովետական բանակների և մեր դաշնակիցների բանակների վճռական հաղթանակների տարի՝ ընդդեմ գերմանական զորքերի: Գերմանացիները հարկադրված էին պատերազմ մղել երկու ճակատում և նրանք լուրջ պարտություններ կրեցին: Նրանք վռնդված են Սովետական Միության, Ֆրանսիայի, Բելգիայի, մինչև Իտալիայի սահմաններից: Նրանց ստիպեցին կռվել Գերմանիայի տերիտորիայում: Գերմանիան ընկավ երկու ճակատի աքցանի մեջ, որից այնպես վախենում էին ֆաշիստական զավթիչները:

Կարմիր Բանակն ընթացիկ տարվա 10 ամսում տասը խորտակիչ հարվածներ հասցրեց գերմանական զորքերին: Պլանաչափորեն և հաջորդաբար շարժման



մեջ դրվեց ամբողջ ռազմաճակատը, սկսած Սառուցյալ օվկիանոսից մինչև Բալկանները: Պատժիչ սուրն իջավ թշնամու պաշտպանության հզոր ամրությունների վրա, հողմացրիվ անելով նրա ռազմական ու քաղաքական բոլոր հաշիվները:

Կարմիր Բանակի առաջին խորտակիչ հարվածի որոտը թնդաց հունվարին: Խորտակելով գերմանացիների երկարատև պաշտպանությունը Լենինգրադի ու Նովգորոդի մոտ, սովետական զորքերը նրանց ետ շպրտեցին Մերձբալթիկա և ազատագրեցին Լենինգրադի մարզը:

Երկրորդ հարվածը հասցվեց Բուգի վրա. ջախջախելով գերմանական զորքերին՝ Կարմիր Բանակը նրանց ետ շպրտեց Դնեստրից այն կողմ և ազատագրեց աջափնյա Ուկրաինան:

Երրորդ հարվածը հասցվեց Ղրիմի շրջանում. սովետական հրետանու և ավիացիայի խորտակիչ ռմբահարվածների տակ հօդս ցնդեցին Կերչի, Պերեկոպի գերմանական ամրությունները: Կարմիր Բանակն ազատագրեց Սևաստոպոլը, Օդեսան, թշնամու ջախջախված զորքերի մնացորդներին նետելով Սև ծովը:

Չորրորդ հարվածը հասցվեց Կարելիայի շրջանում: Կարմիր Բանակը խորտակեց Մաններհայմի պաշտպանության երեք հզոր գծերը, ջարդեց ֆիննական զորքերին ու ազատագրեց Վիբորգն ու Պետրոզավոդսկը և ֆիններին ետ շպրտեց Ֆինլանդիայի խորքը, ազատագրելով Կարելո-Ֆիննական Սովետական ռեսպուբլիկայի մեծ մասը:

Հինգերորդ հարվածը հասցվեց Վիտեբսկի, Բոբրույսկի, Մոգիլևի մոտ: Այդ հարվածները ջարդուփշուր անող մուրճի նման տեղացին թշնամու գլխին, հողմացրիվ անելով նրա ինժեներական ամրությունները, խորտակելով և ջախջախելով գերմանական գնդերը, դիվիզիաները և ամբողջ բանակները: Այդ հարվածի հետևանքով, մեր զորքերն ամբողջովին ազատագրեցին Բելոռուսական Սովետական ռեսպուբլիկան, հասան Վիսլային և ազատագրեցին մեր դաշնակից Լեհաստանի զգալի մասը, հասան Նեմանին և ազատագրեցին Լիտովական Սովետական ռեսպուբլիկայի մեծ մասը, անցան Նեմանը և մոտեցան Գերմանիայի սահմաններին:

Վեցերորդ հարվածը հասցվեց Արևմտյան Ուկրաինայի շրջանում, երբ Կարմիր Բանակը ջարդեց գերմանական զորքերին Լվո-



վի մոտ և նրանց ետ շպրտեց Սանից ու Վիսլայից այն կողմ: Այդ հարվածի հետևանքով ազատագրվեց Արևմտյան Ուկրաինան, մեր զորքերն անցան Վիսլան և Վիսլայից այն կողմ հզոր պլացդարմ ստեղծեցին Սանդոմիրից արևմուտք:

Յոթերորդ հարվածը հասցվեց Քիշնև—Յասսիի շրջանում, որտեղ Կարմիր Բանակն ամբողջովին ջարդեց գերմանա-ռումինական զորքերին և հաղթանակը Քիշնևի մոտ պսակվեց գերմանական 22 դիվիզիայի շրջապատումով, չհաշված ռումինական դիվիզիաները: Այդ հարվածի հետևանքով ազատագրվեց Մոլդավական Սովետական ռեսպուբլիկան, շարքից հանվեց Գերմանիայի դաշնակից Ռումինիան, որը պատերազմ հայտարարեց Գերմանիային և Հունգարիային: Շարքից դուրս հանվեց Գերմանիայի դաշնակից Բուլղարիան, որը նույնպես պատերազմ հայտարարեց Գերմանիային:

Ութերորդ հարվածը հասցվեց Մերձբալթիկայում: Կարմիր Բանակի զորամասերը գերմանական զորքերին ջարդեցին Տալլինի ու Ռիգայի մոտ, նրանց վռնդեցին Մերձբալթիկայից, ազատագրեցին Էստոնական Սովետական ռեսպուբլիկան, Լատվիական Սովետական ռեսպուբլիկայի մեծ մասը,

շարքից դուրս հանվեց Գերմանիայի դաշնակից Ֆինլանդիան, որը պատերազմ հայտարարեց Գերմանիային։ Գերմանական ավելի քան 30 դիվիզիա կտրվեցին Պրուսիայից և աքցանի մեջ սեղմվեցին Տուկումսի ու Լիբավայի շրջանում, որտեղ նրանք վերջին քոթակն են ստանում մեր զորքերից։

Իններորդ հարվածն այժմ հասցվում է Տիսայի ու Դանուբի միջև— Հունգարիայի շրջանում. դրա նպատակն է Հունգարիան դուրս բերել պատերազմից և նրան դարձնել Գերմանիայի դեմ։ Այդ հարվածի հետևանքով սովետական զորքերն օգնեցին մեր դաշնակիցներ՝ Հարավսլավիային, Չեխոսլովակիային և ազատագրեցին նրանց տերիտորիայի զգալի մասը։

Տասներորդ հարվածը հասցվեց Հյուսիսային Ֆինլանդիայում, երբ գերմանական զորքերը դուրս շպրտվեցին Պեչենգայի շրջանից, և մեր զորքերը, հետապնդելով գերմանացիներին, մտան մեր դաշնակից Նորվեգիայի սահմանները։

Կարմիր Բանակի այս տարվա մարտական գործողությունների հետևանքով ջարդվեց և շարքից հանվեց գերմանացիների և նրանց դաշնակիցների մոտ 120 դիվիզիա։



Սովետական պետական սահմանը վերականգնված է ամբողջ երկարությամբ— Սև ծովից մինչև Բարենցի ծովը։

1944 թ. ամառվա կամպանիայի ընթացքում Կարմիր Բանակը մարտերով անցավ Քիշնևից մինչև Բելգրադ՝ ավելի քան 900 կիլոմետր տարածություն, Ժլոբինից մինչև Վարշավա՝ ավելի քան 600 կիլոմետր, Վիտեբսկից՝ մինչև Տիլզիտ՝ 550 կիլոմետր։ Պատերազմը սովետական տերիտորիայից փոխադրվեց ֆաշիստական Գերմանիայի տերիտորիան։

Հերոսական Կարմիր Բանակը և մեր դաշնակիցների քաջարի բանակներն ընդմիշտ վերջ կդնեն ուրիշների հողերի նկատմամբ հիտլերյան ավազակների տածած ախորժակին. «Խնդիրն այն է,— ասում է ընկեր Ստալինը,— որ Գերմանիան այսուհետև ևս պահվի երկու ճակատի աքցանի մեջ։ Այդ է հաղթանակի բանալին»։

Կարմիր Բանակի պատմական մեծ հաղթանակները հնարավոր դարձան շնորհիվ այն բանի, որ թիկունքից նրան անձնվիրաբար օգնում էր մեր ամբողջ երկիրը, մեր երկրի բոլոր ժողովուրդները։

«Մեր ժողովուրդը,— ասում է ընկեր

Ստալինը,—խրախումամբ նվաճեց հերոսական ժողովրդի հռչակ»:

Մեր բանվորներն իրենց բոլոր ուժերը նվիրաբերում են հաղթանակի գործին, ինտելիգենցիան անգնահատելի ավանդ է մտցնում այդ գործի մեջ, կոլխոզային գյուղացիությունը Կարմիր Բանակին օգնում է կռվելու և հաղթելու թշնամուն: Սովետական կանայք և մեր պանծալի երիտասարդությունն աշխատանքային անօրինակ սխրագործություններ են ցուցաբերում աշխատանքի ճակատում:

Սովետական Միությունն իր ուժով գերազանցեց հիտլերյան Գերմանիային: Սովետական պետությունը ոչ միայն ռազմական, այլև տնտեսական հաղթանակ տարավ հիտլերյան Գերմանիայի դեմ: Սովետական պետության տնտեսական հիմքն անհամեմատ ավելի կենսունակ դուրս եկավ, քան թշնամի պետությունների էկոնոմիկան:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի շնորհիվ ստեղծված սոցիալիստական հասարակարգը մեծ և անպարտելի ուժ ավեց մեր ժողովրդին և մեր բանակին:

Միայն տնտեսության սոցիալիստական



սիստեմի հիման վրա կարելի է պահպանել ռազմաճակատի ընդարձակ տարածության վրա տեղավորված միլլիոնավոր զորքերի մատակարարումը սպառազինությամբ, ռազմամթերքով, հանդերձանքով և այլն:

Մենք հաղթում էինք և հաղթում ենք թշնամուն ոչ միայն մեր ռազմիկների անձնվեր քաջությամբ, մարտում նրանց ցուցաբերած կայունությամբ, նրանց բարոյական գերազանցությամբ, մենք թշնամուն հաղթում ենք նաև մեր ինդուստրիայի, մեր սպառազինության գերազանցությամբ, մարտական տեխնիկայի որակով: Կարմիր Բանակն այժմ ո՛չ թե պակաս, այլ ավելի շատ տանկ, հրանոթ, ինքնաթիռ ունի, քան գերմանական բանակը: Մեր երկիրը տնտեսական հաղթանակ տարավ թշնամու դեմ:

«Թիկունքում սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունների, ինչպես նաև ռազմաճակատում մեր ռազմիկների մարտական անթառամ սխրագործությունների աղբյուրը սովետական ջերմ և կենսատու հայրենասիրությունն է» (Ստալին):

Սովետական հայրենասիրության ուժն այն է, որ նրա հիմքը ոչ թե ռասայական

կամ նացիոնալիստական նախապաշարմունքներն են, այլ ժողովրդի խորին նվիրվածությունն ու հավատարմությունն իր սովետական Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորության եղբայրական համագործակցությունը: Սովետական հայրենասիրության մեջ ներդաշնակորեն զուգակցվում են ժողովուրդների ազգային ավանդույթները և Սովետական Միության բոլոր աշխատավորների ընդհանուր կենսական շահերը: Նա չի բաժանում, այլ ընդհակառակը, մեր երկրի բոլոր ազգերին և ժողովուրդներին համախմբում է միասնական եղբայրական ընտանիքի մեջ: Սովետական մարդը սիրում է իր Հայրենիքը, սիրում է իր ժողովրդին, միևնույն ժամանակ նա հարգանքով է վերաբերվում արտասահմանյան երկրների ժողովուրդների իրավունքներին և անկախությանը:

Մեր երկրում հաստատված բոլոր ռասաների ու ազգերի իրավահավասարության իդեոլոգիան, ժողովուրդների լենինյան-ստալինյան բարեկամության ամրապնդման իդեոլոգիան, լիակատար հաղթանակ տարավ հիտլերականների գազանային նացիոնալիզմի և ռասայական ատելության իդեոլոգիա-



յի դեմ: Ռասայական ատելության իդեոլոգիան ու քաղաքականությունը ֆաշիստական պետության ներքին թուլության գործոններից մեկն է, հիտլերյան ավազակային բլոկի քայքայման գործոններից մեկը: Հիտլերյան կլիկը իր մարդատյաց քաղաքականությամբ Գերմանիայի դեմ հանեց աշխարհի բոլոր ժողովուրդներին, իսկ այսպես կոչված՝ «գերմանական ընտրյալ ռասան» դարձավ ընդհանուր ատելության առարկա:

«Այժմ, երբ հայրենական պատերազմը գնում է դեպի հաղթական վախճանը, ամբողջ մեծությամբ երևան է գալիս սովետական ժողովրդի պատմական դերը:

Այժմ բոլորը խոստովանում են, որ սովետական ժողովուրդը իր անձնազոհ պայքարով Եվրոպայի քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ջարդարարներից: Այդ է սովետական ժողովրդի մեծ ծառայությունը մարդկության պատմության առաջ» (Ստալին):

Անցած տարին հակագերմանական կոալիցիայի ընդհանուր գործի հաղթանակի տարի էր: Սովետական ժողովուրդը հիտլերյան Գերմանիայի դեմ իր մղած պայքարում

ձեռք-ձեռքի էր ընթանում ազատասեր ազգերի հետ: Դաշնակիցների պատերազմական մեծ գործողությունների պլաններն իրականացվում են լրիվին և ճշգրտությամբ: Գերմանիային համատեղ հարված հասցնելու վերաբերյալ Թեհրանի կոնֆերանսի մշակած պլանը լիակատար ու ճշգրիտ իրականացում գտավ այս տարվա պատերազմական գործողությունների մեջ:

Միավորված ազգերի ճակատի կայունության նույնպիսի ցուցանիշ են նաև պատերազմից հետո անվտանգության կազմակերպելու հարցի վերաբերյալ Դումբարտոն-Օքսի կոնֆերանսի որոշումները:

Ընկեր Ստալինը նշում է, որ այդ կոնֆերանսում անվտանգության հարցերի ինը տասներորդը լուծված է լիակատար միաբանության ոգով:

Միավորված ազգերի ճակատի ամրության էլ ավելի վառ ցուցանիշ է համարվում Մեծ Բրիտանիայի կառավարության ղեկավար պարոն Չերչիլլի և Մեծ Բրիտանիայի արտաքին գործերի մինիստր պարոն Իդենի հետ Մոսկվայում վերջերս տեղի ունեցած բանակցությունները, որոնք անց-



կացվեցին բարեկամական իրադրության մեջ և լիակատար միաբանության ոգով:

Միահամայն ապարդյուն անցան հիտլերյան Գերմանիայի փորձերը պառակտում սերմանելու միավորված ազգերի միջև: Եթե դեմոկրատական պետությունների մարտական դաշինքը դիմացավ պատերազմի ավելի քան երեք տարիների փորձություններին, ապա առավել ևս այդ դաշինքը կդիմանա պատերազմի եզրափակիչ ստադիայի փորձություններին: Այժմ միավորված ազգերը կանգնած են հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմի հաղթական ավարտման շեմքին:

Ընկեր Ստալինի զեկուցման մեջ նշված են Գերմանիայի նոր ագրեսիան կանխելու միջոցները, ցույց է տրված խաղաղությունը պաշտպանելու և անվտանգությունը ապահովելու համար խաղաղասեր ազգերի ներկայացուցիչներից միջազգային էֆեկտիվ կազմակերպություն ստեղծելու ուղին:

Հիտլերյան Գերմանիայի լիակատար ջախջախումը խաղաղության և անվտանգության վճռական պայմաններից մեկն է: Միավորված ազգերն իսպառ վերջ կդնեն գերմանական ավազակային իմպերիալիզմի

կողմից նոր ագրեսիայի ամենափոքր իսկ հնարավորությունները:

Այսպիսով, դիվանագիտական ճակատում հիտլերականները կրեցին նույնպիսի պարտություններ, ինչպիսիք նրանք կրում են պատերազմի ճակատամարտերում: Այդ պարտությունները վկայում են երեք մեծ տերությունների դաշինքի ամրությունը: Այդ դաշինքի հիմքում դրված են ոչ թե պատահական, ու անցողիկ մոտիվներ, այլ կենսականորեն կարևոր և տևական շահեր: Միավորված ազգերի ամբողջ քաղաքականությունը բխում է այդ շահերի գիտակցումից և ըմբռնումից:

Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ Ի. Վ. Ստալինի 1944 թվի նոյեմբերի 7-ի պատմական հրամանի մեջ դրված է մարտական խնդիր. «Կարմիր Բանակը և մեր դաշնակիցների բանակները ելման դիրքեր են գրավել Գերմանիայի կենսական կենտրոնների վրա վճռական հարձակում գործելու համար: Այժմ մեր խնդիրն է՝ միավորված ազգերի բանակների սրընթաց գրոհով ամենակարճ ժամանակամիջոցում խորտակել հիտլերյան Գերմանիան»: Կարմիր Բանակն իր մեծ առաջնորդի և զորավարի, իմաստուն Ստա-



լինի առաջնորդությամբ, մեր դաշնակիցների բանակների հետ համատեղ, ֆաշիստական գազանին վերջնականապես կոչընչացնի նրա որջում և Բեռլինի վրա կըբարձրացնի հաղթանակի դրոշը:

## Ի՞ՆՉ ՏՎԵՑ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻՆ

Հայ ժողովուրդը, որն աշխարհի ամենահնագույն ժողովուրդներից մեկն է, դեռ շատ վաղ ժամանակներից կորցրեց իր ազգային անկախությունը և ինքնուրույն պետականությունը:

Հայ ժողովուրդը ծանր տառապանքներ է կրել օտարերկրյա նվաճողների կողմից: Հայաստանի վրայով անցած Հռոմեական ու Բյուզանդական լեգեոնները, արաբական և թյուրք-սելջուկական, թաթար-մոնղոլական բանակները, պարսկական ու օսմանյան հորդաները ամայացրին և մոխրակույտի վերածեցին նրա քաղաքներն ու գյուղերը, ոչնչացրին նրա հնագույն հուշարձանները:

Սակայն հայ ժողովուրդը երբեք ծնկի չի եկել, այլ միշտ պայքարել է հանուն իր ազատության, անկախության և պատվի:

Նա իր մղած ազատագրական դարավոր պայքարում միշտ էլ ամենաջերմ աջակցություն է ստացել ռուս մեծ ժողովրդից և նրա օգնությամբ էր, որ 19-րդ դարի ըսկզբներին փրկվեց ֆիզիկական բնաջնջումից և, թոթափելով պարսկական լուծը, իր բախտն ընդմիշտ կապեց ռուս մեծ ժողովրդի պատմական բախտի հետ:

Հայ ժողովրդի գլխի վրայով ահավոր փոթորիկ անցավ 1914—1918 թվերին, երբ գերմանական վիլհելմյան բանակները և օսմանյան հորդաները կազմակերպեցին հայերի մեծ կոտորածներ, որի ժամանակ ֆիզիկապես ոչնչացան մոտ մեկ և կես միլիոն անմեղ հայեր:

Հայ ժողովուրդը ծանր տառապանքներ է կրել նաև դաշնակցական տիրապետության տարիներին: Դաշնակների տիրապետության ամբողջ ժամանակվա ընթացքում Հայաստանը իրենից ներկայացնում էր անվերջանալի պատերազմների, ազգամիջյան կոտորածների, ջարդերի մի երկիր: Հայաստանի ժողովրդական տնտեսությունը, նրա արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը և կուլտուրան հասան լիակատար քայքայման: Հայ ժողովուրդը կանգնեց ֆիզիկական ոչնչացման առաջ:



«Հայաստանը դաշնակների օրոք,—ասում է ընկեր Միկոյանը,— սովի երկիր էր, որբերի երկիր, արցունքի երկիր, աղքատության ու վայրենի կամայականության երկիր»:

1920 թվի աշնանը բացառիկ ծանր դրություն ստեղծվեց Հայաստանի աշխատավորների համար: Նա կանգնել էր կործանման եզրին: Հայ ժողովուրդը այդ կործանումից փրկվեց սովետական իշխանության շնորհիվ: Հայ ժողովրդի համար ստեղծված այդ ծանր օրերին՝ 1920 թվի նոյեմբերի 9-ին մեծ Ստալինը Անդրկովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների առաջ խնդիր դրեց «Ինչ էլ որ լինի պետք է փրկել Հայաստանը, շուտով փրկել Հայաստանը»:

Հայ ժողովրդի փրկարար ուժը հանդիսացան սովետական Ռուսաստանը, երիտասարդ Կարմիր Բանակը, Լենին-Ստալինի մեծ պարտիան: Ազատության դրոշը պարզած հայ աշխատավորությանը օգնության հասավ 11-րդ բանակը, որի անմիջական օժանդակությամբ տապալվեց դաշնակների տիրապետությունը և 1920 թվի նոյեմբերի 29-ին Հայաստանում հաստատվեցին սովետական կարգեր:

Սովետական իշխանությունը դեն շպրտե-

լով կապիտալիստների և կալվածատերերի լուծը, ոչնչացնելով բուրժուական, նացիոնալիստական տարրերին, ժողովրդի անարգ թշնամիներին, հայ ժողովրդին բերեց տնտեսական, քաղաքական ու կուլտուրական չտեսնված ծաղկում:

Ընկեր Ստալինի խոսքերով ասած՝ «Միայն սովետական իշխանության գալուստը Հայաստանին բերեց խաղաղություն և ազգային վերածննդի հնարավորություն»:

Սովետական իշխանության 24 տարիների ընթացքում, բոլշևիկների փառապանծ պարտիայի ղեկավարությամբ, հայ ժողովրդի մեծ բարեկամ ընկեր Ստալինի առաջնորդությամբ և հոգատարությամբ, հիմնովին վերափոխվեց Հայաստանը: «Միայն Հոկտեմբերյան ռևոլյուցիան էր, որ հայ ժողովրդին տվեց օդ, արև, լույս, տվեց կյանք» («Պրավդա»):

Սովետական իշխանության տարիներին մեծ չափով զարգացան Հայաստանի արդյունաբերությունը, էլեկտրիֆիկացիան, գյուղատնտեսությունը, կուլտուրան: Ստալինյան հնգամյակների տարիներին, սովետական իշխանության ազգային քաղաքականության շնորհիվ, Հայաստա-



նում սկսեցին կառուցվել և գործարկվել տասնյակ գործարաններ, ֆաբրիկաներ, էլեկտրոկայաններ:

Մեր ժողովրդական տնտեսության հզոր վերելքի մասին են վկայում սոցիալիստական արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղերի, ինչպես մեքենաշինական, քիմիական, մետաղագործական, տեքստիլ, սննդի և այլ ճյուղերի ստեղծումը, հարյուրավոր նոր ձեռնարկությունների գործարկումը, որոնք երկրին ու Կարմիր Բանակին տալիս են լավորակ արտադրանք: Մեր ռեսպուբլիկայում մեծ զարգացման է հասել սննդի արդյունաբերությունը:

Հսկայական թափով առաջ տարվեց հիդրո-էլեկտրոկայանների շինարարությունը: Նախասովետական շրջանում Հայաստանում կար միայն 7 մանր էլեկտրոկայան, որոնց ընդհանուր կարողությունը 1,500 կիլովատից չէր անցնում: Սովետական իշխանության տարիներին Հայաստանում կառուցվեց և գործարկվեց 48 հիդրո-էլեկտրոկայան:

Արդյունաբերության վերելքի մասին վկայում է այն փաստը, որ արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը ժո-

ղովրդական տնտեսության մեջ 1913 թվականի 23,9 տոկոսից այժմ հասել է ավելի քան 78 տոկոսի:

Ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետ միասին անընդհատ վերելք է ապրել նաև մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը. Նախառևոլյուցիոն շրջանի համեմատությամբ ավելի քան 5 անգամ ընդարձակվել է ցանքերի տարածությունը, ավելի քան 3 անգամ ընդարձակվել է ջրովի հողերի տարածությունը: Շիրակի ջրանցքը ոռոգում է ավելի քան 10 հազար հեկտար հող, Սարդարապատի ջրանցքը՝ 21 հազար հեկտար, Ստալինի անվան ջրանցքը՝ 22 հազար հեկտար: Միայն պետական միջոցներով կառուցվել են ավելի քան 570 կիլոմետր երկարությամբ ջրանցքներ, չհաշված աշխատավորների սեփական միջոցներով կառուցված գյուղական և միջշրջանային ջրանցքները:

Լենինի-Ստալինի սքանչելի ազգային իմաստուն քաղաքականության շնորհիվ արագորեն աճեց ու ծաղկեց հայ ժողովրդի բազմադարյան կուլտուրան, արվեստը, գիտությունն ու գրականությունը: Դրա ամենավառ վկայությունն է Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի ստեղծումը՝



իր բազմաթիվ ինստիտուտներով, լաբորատորիաներով, փորձակայաններով:

1918 թվին Հայաստանում կար ընդամենը 166 դպրոց՝ 18·600 աշակերտով, իսկ այժմ կա 1·134 դպրոց՝ 269·000 աշակերտներով, չհաշված տեխնիկումները և մեծահասակների դպրոցները, որտեղ սովորում են 14·747 երիտասարդներ:

Նախառևոլյուցիոն շրջանում չկար ոչ մի բարձրագույն դպրոց, իսկ այժմ մեր ռեսպուբլիկան ունի 11 բարձրագույն ուսումնական հաստատություն, այդ թվում Պետական համալսարանը, Գյուղատնտեսականը, Պոլիտեխնիկը, Մանկավարժականը, Անասնաբուժականը, Բժշկականը, Թատերական և այլ ինստիտուտները: Մեր ռեսպուբլիկայում գործում են մոտ 40 գիտահետազոտական հաստատություններ:

Ծաղկեց ու բարգավաճեց մեր ժողովրդի արվեստը: Ռեսպուբլիկայում այժմ գործում են 25 պետական թատրոն, այդ թվում Ա. Սպենդիարովի անվան Օպերայի և բալետի պետական թատրոնը, Գ. Սունդուկյանի անվան Պետական դրամատիկ թատրոնը, Երևանի Օպերետային թատրոնը և այլն:

Սովետական իշխանությունը հատուկ հոգատարություն ցուցաբերեց դեպի ժողո-

վերջական առողջապահությունը: Ստեղծվել են տասնյակ ամբուլատորիաներ, կլինիկաներ, հիվանդանոցներ, ծննդատներ, բժշկա-սանիտարական հիմնարկներ:

Այս բոլոր նվաճումները հայ ժողովուրդը ձեռք բերեց շնորհիվ սովետական իշխանության, շնորհիվ Լենին-Ստալինի պարտիայի իմաստուն քաղաքականության:

## ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՄԱՍՆԱԿԻՑՆ Է

Սովետական մեծ հայրենիքը գերմանա-ֆաշիստական զավթիչների արշավանքից պաշտպանելու համար, Սովետական Միության բազմազգ ժողովուրդների հետ միասին, ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ, պատերազմի առաջին իսկ օրից ոտքի կանգնեց նաև հայ ժողովուրդը, որը պատվով է կատարում իր պարտքը հայրենիքի հանդեպ թե ռազմաճակատում և թե թիկունքում՝ աշխատանքային ֆրոնտում:

Հայրենական պատերազմի ռազմաճակատներում ցուցաբերած խիզախության և ա-



րիության համար՝ 1944 թ. հոկտեմբերի 1-ի տվյալներով 21 897 հայ ռազմիկների կուրծքը զարդարված է Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով:

Հայրենական պատերազմի բոցերում աճեցին ու ստալինյան փառապանծ զորավարների փառք վաստակեցին 40-ից ավելի հայ գեներալներ:

Ստալինյան մեծանուն զորավարներից են Մերձբալթյան առաջին ռազմաճակատի հրամանատար, Սովետական Միության Հերոս, բանակի գեներալ Ի. Բաղրամյանը, ծովակալ Ի. Իսակովը, հրետանու գեներալ-լեյտենանտ Ի. Վեքիլյանը, Սովետական Միության Հերոս, հրետանու գեներալ-լեյտենանտ Մ. Բարսեղյանը, գեներալ-լեյտենանտ Ս. Գալաջևը, գեներալ-մայոր Ս. Մարտիրոսյանը, գեներալ-մայոր Գ. Տեր-Գասպարյանը և ուրիշները:

50-ից ավելի հայ մարտիկներ ու հրամանատարներ արժանացել են Սովետական Միության Հերոսի բարձր կոչմանը:

Ամբողջ Սովետական Միությանը հայտնի են ստալինյան անվեհեր բազեներ՝ Սովետական Միության Հերոսներ Նելսոն Ստեփանյանի, Սերգեյ Բուռնազյանի, Սամսոն Մկրտումյանի, Արմեն Հայրյանի, Արտա-

չես Հարությունյանի սխրագործությունները:

Հավերժ փառքով պսակեց իր անունը Սովետական Միության Հերոս Հունան Ավետիսյանը, որը վճռական ճակատամարտի մոմենտին իր մարմնով փակեց գերմանական դզոտի հրանցքը:

21-ամյա երիտասարդ լեյտենանտ Սերգեյ Օհանյանը իր հրամանատարության տակ գտնվող մարտկոցի 16 մարտիկների հետ միասին 1942 թվի ամռանը Ռոստով քաղաքից արևմուտք դյուցազնական մարտ մղեց գերմանական 50 տանկի դեմ: 17 խանդավառ հայրենասերներ, որոնց մեջ կային հայեր, ռուսներ, ադրբեջանցիներ, վրացիներ, ուկրաինացիներ, որոշեցին մեռնել, բայց թույլ չտալ գերմանական հրեշներին ճեղքել Կարմիր Բանակի պաշտպանողական բնագիծը: Օհանյանի մարտիկների դիպուկ կրակից բոցավառվում էին թշնամու տանկերը: 17 ռազմիկները անհավասար մարտում հերոսաբար ընկան, բայց թշնամին չկարողացավ ճեղքել պաշտպանությունը: Սովետական Կառավարությունը բարձր գնահատեց Սերգեյ Օհանյանի կատարած սխրագործությունը և նրան Սովետական Միության Հերոսի կոչում շնորհեց:



Անմահ սխրագործություն կատարեց օդաչու Մարգարյանը, որը փրկեց ռուսական բազե Պերեդերևի կյանքը: Օդում նկատելով իր ընկերոջ խփված ինքնաթիռը, որը հետապնդվում էր չորս «Մեսսերշմիդտ»-ների կողմից, Մարգարյանը աներկյուղ դրոհեց գերմանացիների վրա, քշեց նրանց և իր կործանիչի պաշտպանության տակ վիրավոր Պերեդերևին բերեց մեր կողմը:

Դնեպրն անցնելու մարտերում անօրինակ խիզախություն ցուցաբերելու համար Սովետական Միության Հերոսի կոչման արժանացան Լևոն Մարդուլյանը, Իվան Շահումյանը, Վլադիմիր Հովհաննիսյանը, Գեդեոն Միքայելյանը, Անդրանիկ Ղազարյանը և ուրիշ հայ մարտիկներ, սպաներ ու գեներալներ:

Հայ ժողովրդի զավակների սխրագործությունները հայտնի են նաև Սովետական Միության սահմաններից դուրս՝ մեր դաշնակից երկրներում: Գեներալ-մայոր Սարգիս Մարտիրոսյանը Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Ռուզվելտի կողմից պարգևատրվեց մարտական ծառայության համար հրամանատարական շքանշանով: Սովետական Միության Հերոս փոխգնդապետ Գուկաս Մադոյանը պարգևատրվեց

«Միությունների համար» ուկե մեդալով։
Հայրենական Մեծ պատերազմում իրենց
մարտական և հմուտ գործողություններով
աչքի ընկան Հայաստանում կազմակերպ-
ված մի շարք զորային միավորումներ։
Այդ զորամասերի մեջ առանձնապես աչքի
ընկան 89-րդ Թամանյան Հայկական հրա-
ձգային դիվիզիան, Վորոշիլովի անվան
51-րդ գվարդիական դիվիզիան, 409-րդ
Կիրովոգրադյան հրաձգային դիվիզիան։
Թաղմաճակատում մարտնչող իր հերոս
զավակներից ետ չի մնում նաև թի-
կունքի հայ աշխատավորությունը։
1943 նոյեմբերի 7-ի հրամանի մեջ
ընկեր Ստալինը Սովետական Միու-
թյան մյուս ռեսպուբլիկաների թվում
նշեց նաև Հայաստանը, որպես Կար-
միր Բանակի հզոր զինանոց, որը ռազմա-
ճակատին անխափան մատակարարում է
ռազմամթերք, սպառազինություն, պարե-
նամթերք և հանդերձանք։ Համախմբված
ինչպես երբեք Սովետական Կառավարու-
թյան, բոլշևիկյան պարտիայի և մեծ
Ստալինի շուրջը, հայ ժողովուրդը պատե-
րազմի առաջին իսկ օրից իր ամբողջ տըն-
տեսությունը վերակառուցեց ռազմական
ձևով, լոզունգ ունենալով՝ ամեն ինչ ռազ-



մաճակատի համար, ամեն ինչ հաղթանակի
համար։
Պատերազմի ժամանակվա դժվարին պայ-
մաններում ռեսպուբլիկայում կարճ ժամ-
կետում կառուցվեցին ու գործարկվեցին
երեք տասնյակ գանազան ձեռնարկություն-
ներ։ Յուրացվեց ավելի քան 270 տեսակի
նոր արտադրանքի մասսայական արտադրու-
թյուն, որոնց մեծ մասը ռազմական նշա-
նակություն ունի։
Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը
ընդհանուր արտադրանքի 9-ամսյա պլանը
կատարել է 100,8 տոկոսով։ Մտնելով նա-
խահոկտեմբերյան սոցիալիստական մրցու-
թյան մեջ, ռեսպուբլիկայի արդյունաբե-
րական շատ ժողկոմատներ՝ մանդի, մսեղե-
նի ու կաթնեղենի, թեթև արդյունա-
բերության՝ կատարել և գերակատարել են
1944 թվի անցած 9 ամսվա պլանները։
Սովետական Հայաստանի պարտիական,
սովետական ու տնտեսական կազմակերպու-
թյունները, անշեղորեն կենսագործելով
Համկ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Ժողկոմսո-
վետի 1941 թ. հունվարի 7-ի որոշումը,
«Տեղական հումքից լայն սպառման ապ-
րանքների արտադրությունը ավելացնելու
միջոցառումների մասին», պատերազմի

տարիներում Կարմիր Բանակի ու ռազմաճակատի անհետաձգելի կարիքները սպասարկելու հետ միասին մեծ աշխատանք են կատարել բնակչության անհրաժեշտ լայն սպառման ապրանքների ու պարենամթերքի թողարկումն ավելացնելու ասպարեզում: Ներկայումս տեղական արդյունաբերությունը և արդյունաբերական կոոպերացիան թողարկում են ավելի քան 423 տեսակի նոր ապրանքներ, որոնք առաջ չեն արտադրվել:

Լայն սպառման ապրանքների արտադրությունը տեղական արդյունաբերության ձեռնարկությունների կողմից ավելացել է ավելի քան 3 անգամ, իսկ արհեստագործական կոոպերացիայի կողմից՝ 23 տոկոսով:

Պատերազմի տարիներին խոշոր հաջողություններ է ձեռք բերել նաև կոլխոզային աշխատավորությունը գյուղատնտեսական կուլտուրաների ցանքերն ընդարձակելու, բերքատվությունը բարձրացնելու, անասնաբուծությունը զարգացնելու ուղղությամբ: Ռեսպուբլիկան իր ցանքատարածությունն ընդարձակեց մոտ 40 հազար հեկտարով, ըստ որում շաքարի ճակնդեղի և ծխախոտի կուլտուրաների ցանքատարածու-



թյունն ավելացավ գրեթե 8 անգամ: Էլ ավելի ընդարձակվեցին խաղողի և պտղատու այգիների տարածությունները: 1940 թվից հետո տնկվել է 3.735 հեկտար խաղողի և 5.119 հեկտար պտղատու այգի: Կառուցվեցին տասնյակ ոռոգիչ ջրանցքներ, որոնք հնարավորություն տվին օգտագործելու 20 հազար հեկտար նոր հողամասեր:

Այժմ մեր կոլխոզները տալիս են ավելի շատ հաց, ծխախոտ, շաքարի ճակնդեղ, բանջարեղեն ու պտուղ, քան մինչև պատերազմը: Ժամկետից շուտ կատարելով հացամթերումները, կոլխոզներն ու կոլխոզնիկները այս տարի լրացուցիչ կերպով Կարմիր Բանակի ֆոնդը հանձնեցին 200 հազար փութ հացահատիկ: Հայաստանի կոլխոզներն զգալի հաջողություններ ունեն նաև անասնաբուծության զարգացման և մթերատվության բարձրացման գործում: Հայրենական պատերազմի 3 տարվա ընթացքում Հայաստանի կոլխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացավ 5,7 տոկոսով, իսկ ոչխարների ու այծերի գլխաքանակը՝ 23,1 տոկոսով:

Մեր ռեսպուբլիկայի կոլխոզներում անասնապահության զարգացման պետական պլանը մինչև հունիսի մեկը կատարվեց

այսպես. խոշոր եղջերավոր անասունների գծով՝ 100,6 տոկոսով, տալով 4 տոկոսի աճ, մանր եղջերավոր անասունների գծով՝ 117 տոկոսով, տալով 33,7 տոկոսի աճ, խոզերի գծով պլանը կատարվեց 108,5 տոկոսով, տալով 9,4 տոկոսի աճ: Բարձր գնահատելով մեր ռեսպուբլիկայի հանրային անասնապահության բնագավառում այս տարի ձեռք բերված հաջողությունները, ՍՍՌՄ Ժողկոմսովետը Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկային արժանացրեց Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշին ու տվեց դրամական պարգև: Ստեփանավանի շրջանն ևս նվաճել է Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը:

Հայկական ռեսպուբլիկայի աշխատավորությունը, Հայրենական պատերազմի ընթացքում պետական բոլոր պարտավորությունները և ռազմաճակատի պատվերները հաջողությամբ կատարելուց բացի, իր անհատական միջոցներից զգալի օգնություն է ցույց տվել ռազմաճակատին: Ռեսպուբլիկայի հայրենասերները պատերազմի սկզբից Կարմիր Բանակի մարտիկներին ուղարկել են ավելի քան մեկ միլիոն կտոր տաք հա-



գուստ, 206.328 անհատական նվեր-ծանրոցներ, 45 վագոն զանազան մթերքներ: Բացի այդ, տասնյակ վագոններով նվերներ են ուղարկված 89-րդ Թամանյան դիվիզիային, Վորոշիլովի անվան 51-րդ գվարդիական դիվիզիային, 409-րդ Կիրովաբադյան դիվիզիային, 15-րդ Ստալինգրադյան դիվիզիային, Սևծովյան նավատորմի հերոս մարտիկներին ու սպաներին:

Հայրենասիրական անօրինակ նախաձեռնություն ցուցաբերեցին Հայաստանի կոլխոզնիկները, որոնք 1943 թվին հավաքեցին 49 միլիոն 300 հազար ռուբլի կանխիկ դրամ «Հայաստանի Կոլխոզնիկ» տանկային շարասյունը կառուցելու համար: Հայաստանի աշխատավորությունը 21 միլիոն 402 հազար ռուբլի հավաքեց «Սովետական Հայաստան» օդային էսկադրիլիայի կառուցման համար, իսկ մեր կոմերիտականները մի քանի միլիոն ռուբլի դրամ հավաքեցին և հատկացրին «Հայաստանի կոմերիտական» տանկային շարասյան կառուցման համար: Շատ կոլխոզնիկներ իրենց անձնական խնայողություններից պաշտպանության ֆոնդին նվիրեցին յուրաքանչյուրը 100.000 ռուբլուց ավելի, արժանանալով մեծ Ստալինի շնորհակալական հեռագրերին:

Հայաստանի ինտելիգենցիան, գիտության և արվեստի աշխատողներն իրենց ամբողջ ուժերն ու ընդունակություններն ի սպաս դրին հայրենիքի պաշտպանության մեծ գործին:

Հայաստանի գիտնականներն ու գրողները, նկարիչներն ու կոմպոզիտորները, դերասաններն ու երաժիշտները, ուսուցիչներն ու գյուղատնտեսները, բժիշկներն ու ճարտարապետները, ամբողջ հայ ինտելիգենցիան, գիտական ստեղծագործական մեծ աշխատանք են տարել, ավելի ևս բարձրացնելով սովետական երկրի տնտեսական ու ռազմական հզորությունը:

Հայ ժողովրդին, ինչպես նաև սովետական մյուս ժողովուրդներին սպառնացող վտանգը ոտքի հանեց նաև արտասահմանյան հայերին, որոնք պատերազմի սկզբից սկսած իրենց օգնությունը ցույց տվին սովետական պետությանը և նրա Կարմիր Բանակին: Վերջերս Իրանի, Սիրիայի, Լիբանանի և արտասահմանի այլ վայրերում գտնվող հայերը խոշոր գումարներ մուծեցին պետական պաշտպանության ֆոնդը, Մերձբալթյան առաջին ռազմաճակատի հրամանատար Սովետական Միության Հեր



ոս Բաղրամյանի անվան տանկային շարասյուն կառուցելու համար:

Հայրենական պատերազմի այս օրերին հայ ժողովուրդը միասնական է ու համախմբված ինչպես երբեք: Հայ ժողովուրդը Հայաստանում սովետական իշխանության հաստատման 24-րդ տարեդարձը՝ նշում է Կարմիր Բանակի պատմական խոշոր հաղթանակների օրերին, երբ Սովետական ամբողջ տերիտորիան մաքրված է գերմանական զավթիչներից:

Ընկեր Ստալինն իր մարտական հրամանի մեջ ասաց.

«Կարմիր Բանակը և մեր դաշնակիցների բանակները նեղման դիրքեր են գրավել՝ Գերմանիայի կենսական կենտրոնների վրա: վճռական հարձակում գործելու համար: Այժմ մեր խնդիրն է՝ Միավորված Ազգերի բանակների սրընթաց գրոհով ամենակարճ ժամանակամիջոցում խորտակել հիտլերյան Գերմանիան»:

Ընկեր Ստալինի այս մարտական հրամանը կենսագործելու համար հայ ժողովուրդը պետք է լարի իր բոլոր ուժերը՝ լրիվ չափով օգտագործելու ժողովրդական

տնտեսության նյութական բոլոր ռեզերվները:

Հարկավոր է ամեն կերպ ծավալել ստախանովյան շարժումը, հասնել յուրաքանչյուր բանվորի, յուրաքանչյուր բրիգադայի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը*):

Արտադրական պլանների կատարումը և գերակատարումը նրա բոլոր ցուցանիշներով պետք է դառնա յուրաքանչյուր ձեռնարկության անխախտ օրենքը:

Հարկավոր է ամենուրեք բարելավել արտադրության տեխնոլոգիան, բարձրացնել արտադրանքի որակը, անընդհատ կատարելագործել մեր գործարաններում և փաբրիկաներում արտադրվող մարտական տեխնիկայի սպառազինության տեսակները, բարելավել երկաթուղային կայարանների աշխատանքը, արագացնել վագոնների շրջանառությունը, ապահովել ժողովրդական տնտեսության և ռազմական բեռների արագ փոխադրումը:

---

*) Զրույց և զեկուցում անցկացնող ագիտատորներն ու զեկուցողները պետք է հարցերը կապակցեն տվյալ ձեռնարկության կամ կոլխոզի առջև դրված խնդիրների հետ:



Հարկավոր է արագ ավարտել արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտն ու կոմունալ-կենցաղային հիմնարկությունները ձմռանը նախապատրաստելու աշխատանքները:

Յուրաքանչյուր օր աճում է Կարմիր Բանակի հացի ֆոնդը, կոլխոզները պետական պլաններից դուրս տալիս են հաց, կարտոֆիլ և բանջարեղեն. անհրաժեշտ է, որ ոչ մի կոլխոզ, ոչ մի կոլխոզային տնտեսություն դուրս չմնա հայրենասիրական այդ շարժումից:

Մեր ռեսպուբլիկան ընթացիկ տարում նվաճեց Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը՝ անասնաբուծության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար: Այդ էլ ավելի է պարտավորեցնում մեզ բարձրացնելու անասունների գլխաքանակն ու մթերատվությունը:

Սովետական բազմազգ ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը, ի պատասխան Կարմիր Բանակի հաղթանակների և ընկեր Ստալինի Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ Ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի առթիվ տված զեկուցման ու հրամանի, կլարի իր բոլոր ուժերը, որպեսզի

է՛լ ավելի ուժեղացնի օգնությունը հերոսական Կարմիր Բանակին, արագացնի ֆաշիստական գազանի ջախջախումը իր սեփական որջում: Հեռու չէ այն օրը, երբ Կարմիր Բանակը Բեռլինի վրա կբարձրացնի հաղթանակի դրոշը:

Կեցցե՛ Հայաստանում սովետական իշխանության հաստատման 24-րդ տարեդարձը:

Կեցցե՛ մեր հերոսական Կարմիր Բանակը:

Կեցցե Լենին-Ստալինի պարտիան— գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մեր հաղթանակի կազմակերպիչը:

Կեցցե՛ Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր ՍՏԱԼԻՆԸ:



**ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ!**

ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ (ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄ, ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ), ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԿՏՊԱԳՐՎԵՆ ՄԵՐ ԲԼՈԿՆՈՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ:

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 01820 Պատ. 1218, տիրաժ 5000

Հայկական ՍՍՌ ժողկոմսովետին կից գրքերի և ամսագրերի տպարան, Երևան

տնտեսության նյութական բոլոր ռեսուրսները:

Հարկավոր է ամեն կերպ ծավալել ստախանովյան շարժումը, հասնել յուրաքանչյուր բանվորի, յուրաքանչյուր բրիգադայի աշխատանքի արտադրողականության բարձրացմանը*):

Արտադրական պլանների կատարումը և գերակատարումը նրա բոլոր ցուցանիշներով պետք է դառնա յուրաքանչյուր ձեռնարկության անխախտ օրենքը:

Հարկավոր է ամենուրեք բարելավել արտադրության տեխնոլոգիան, բարձրացնել արտադրանքի որակը, անընդհատ կատարելագործել մեր գործարաններում և ֆաբրիկաներում արտադրվող մարտական տեխնիկայի սպառազինության տեսակները, բարելավել երկաթուղային կայարանների աշխատանքը, արագացնել վագոնների շրջագայությունը, ապահովել ժողովրդական տնտեսության և ռազմական բեռների արագ փոխադրումը:

---

*) Զրույց և զեկուցում անցկացնող ագիտատորներն ու զեկուցողները պետք է հարցերը կապակցեն տվյալ ձեռնարկության կամ կոլխոզի առջև դրված խնդիրների հետ:



Հարկավոր է արագ ավարտել արդյունաբերական ձեռնարկությունները, տրանսպորտն ու կոմունալ-կենցաղային հիմնարկությունները ձմռանը նախապատրաստելու աշխատանքները:

Յուրաքանչյուր օր աճում է Կարմիր Բանակի հացի ֆոնդը, կոլխոզները պետական պլաններից դուրս տալիս են հաց, կարտոֆիլ և բանջարեղեն. անհրաժեշտ է, որ ոչ մի կոլխոզ, ոչ մի կոլխոզային տնտեսություն դուրս չմնա հայրենասիրական այդ շարժումից:

Մեր ռեսպուբլիկան ընթացիկ տարում նվաճեց Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը՝ անասնապահության ասպարեզում ձեռք բերած հաջողությունների համար: Այդ էլ ավելի է պարտավորեցնում մեզ բարձրացնելու անասունների գլխաքանակն ու մթերատվությունը:

Սովետական բազմազգ ժողովուրդների հետ միասին հայ ժողովուրդը, ի պատասխան Կարմիր Բանակի հաղթանակների և ընկեր Ստալինի Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ Ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձի առթիվ տված զեկուցման ու հրամանի, կլարի իր բոլոր ուժերը, որպեսզի

է՛լ ավելի ուժեղացնի օգնությունը հերոսական Կարմիր Բանակին, արագացնի ֆաշիստական գազանի ջախջախումը իր սեփական որջում։ Հեռու չէ այն օրը, երբ Կարմիր Բանակը Բեռլինի վրա կբարձրացնի հաղթանակի դրոշը։

Կեցցե՛ Հայաստանում սովետական իշխանության հաստատման 24-րդ տարեդարձը։

Կեցցե՛ մեր հերոսական Կարմիր Բանակը։

Կեցցե Լենինի-Ստալինի պարտիան — գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մեր հաղթանակի կազմակերպիչը։

Կեցցե՛ Գերագույն Գլխավոր Հրամանատար, Սովետական Միության Մարշալ ընկեր ՍՏԱԼԻՆԸ։

---

**ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ!**

ԽՆԴՐՈՒՄ ԵՆՔ ՁԵԶ ՀԵՏԱՔՐՔՐՈՂ ՀԱՐՑԵՐԻ ՄԱՍԻՆ ԳՐԵԼ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆԸ (ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄ, ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ), ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ ԿՏՊԱԳՐՎԵՆ ՄԵՐ ԲԼՈԿՆՈՏԻ ՀԵՐԹԱԿԱՆ ՀԱՄԱՐՆԵՐՈՒՄ։

*ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ*

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ

ՎՖ 01820 *Պատ. 1218, տիրաժ 5000*

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան